# ԱԶԳԱԳՐԱԿԱՆ

## ՄԵՐ ԱՌԱԿԱՑ՝ ՀՆԴԿԱԿԱՆԱՑ ՀԵՏ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆ

Վաղագոյն ժամանակներէ սկսեալ՝ ամէն ազգաց մէջ շատ սովորական են վէպք եւ Առակք, որք հասարակօրէն ի բերան ժողովրդեան եւեթ գտնուելով եւ միայն աւանդութեամբ յորդւոց յորդիս անցնելով, այնչափ միայն կը հասնէին հեռաւորաց տեղեաւ եւ ժամանակաւ՝ որչափ առթիւ իւիք ի գիր առնուած կ'ըլլային։ — Սակայն այս եւս անտարակուսելի կ'երեւայ թէ երբեմն նաեւ ճանապարհորդաց միջոցաւ այլեւայլ ազգաց վէպերն ու Առակներն մինչեւ հեռաւոր կողմերը կը հասնէին։ — Ի հարկէ դարեր անցնելու էին՝ մինչեւ աստ անդ մատենագիրք ձեռք զարնէին ի մի ամփոփել այսպիսի ժողովրդական վէպերն ու Առակներն եւ ի գիր աւանդել, անշուշտ զանոնք կարգաւորելով եւ զարդարելով եւ իրենց մտաց գիւտերն ի նոսին յաւելլով։

Այժմու հաւանական կարծիքն այն է՝ որ ժողովրդական Առակներն այսպէս գրի անցընելու եւ միանգամայն նորէնոր բանաստեղծելու սկիզբն առ Հնդիկս եղած է, որոց սանսկրիտ լեզուաւ յօրինեալ այս գրութեանց մեծ մասն ցմեզ հասած է։ — Բնական էր որ այս սովորութիւնն՝ Առակներ ի գիր առնլոյ՝ հետզհետէ այլ մերձաւոր ազգաց անցնելով, եւ անոնցմէ՝ աւելի հեռաւորաց, ընդհանրանար եւ ամէն կողմ տարածուէր։ Արդեամբք իսկ այնպէս եղած է, մինչեւ կրնայ ըսուիլ՝ թէ Առակք եւ վէպք մի ի գլխաւոր նիւթոց եղած էին հնագոյն գրականութեան, մանաւանդ յարեւելս։ Այսպէս՝ Հնդիկք, Պարսիկք, Ասորիք, Արաբացիք, Թիպէթցիք եւ այլք ունին բազմաթիւ Առակաց հաւաքածոյ։ Իսկ արեւմտեան ազգերէն՝ բնականապէս Յոյնք եւ Հռովմայեցիք միայն կարող էին ի հին ժամանակս մասնակցիլ ի նոյն։

Բայց Հնդկաց եւ այլ արեւելեան հին ազգաց Առակներու հաւաքածոյք՝ Յունաց եւ նորագոյն ազգաց եւ մեր իսկ Առակներուն նման՝ իրարմէ անկախ զատ զատ վէպերու ժողովածոյք չեն. այլ մեծաւ մասամբ մէջէ մէջ ագուցեալ եւ իրար ընդհատելով խառնեալ են՝ գլխաւորաբար թագաւորաց համար յօրինեալ բարոյական–քաղաքագիտական գրոց, եւ կամ ընդարձակ վիպասանութեանց, դիւցազնական քերթուածոց եւ այլ նման գրուածոց մէջ։ Յայսպիսի գրութիւնս գործունէութիւն ունեցող անձինք՝ իրենց խօսքն ու կարծիքն օրինակօք հաստատագոյն ընելու նպատակաւ՝ ի մէջ կը բերեն այլեւայլ վէպեր կամ Առակներ։

Մեծ գործակցութիւն ունեցած են Արաբացիք գրականութեան այս ճիւղին մէջ, զոր բազմօք ծաղկեցուցած են։ Բայց յայսմ իրենց գործունէութիւնն ոչ այնչափ հին է եւ ոչ բոլորովին ինքնակաց։ Արդարեւ իբրեւ Առակախօս նշանաւոր է իրենց մէջ Լոգման, որ Արաբիկ Եսովպոս կը համարուի, մինչեւ ոմանք — զինք նոյնացընելով՝ իբրեւ ժամանակակից Դաւթի եւ Աբրահամու իսկ՝ ի նուիրական Մատենի Մահմետականաց յիշատակուած համանուն իմաստնոյն հետ, — շատ հին կը դնեն արաբական գրաւոր Առակաց սկզբնաւորութիւնն։ Սակայն այնչափ կանուխ ժամանակաց գործք չեն Լոգմանի ընծայուած Առակք։

Նոյնպէս Ասորիք ճոխ մատենագրութիւն ունին Առակաց՝ թէ՛ ինքնագիր աշխատութեամբք եւ թէ՛ թարգմանութեամբք։ Յայսմ վերջին մասին մեծ արդիւնք ունեցած են՝ իրենց լեզուին թարգմանելով Հնդկաց ամէնէն հին եւ ամէնէն նշանաւոր Առակաց գումարութիւնն, որ է՝ Պիլփայի Առակք կամ Գալիլա եւ Տիմնա անուանեալ մատեանն, որով մեծապէս նպաստած են նոյն հռչակեալ գրուածոյն պահպանութեան, ինչպէս ստորեւ պիտի տեսնենք։

Առակաց վրայ խօսուած ժամանակ հնար չէ անյիշատակ թողուլ զՅոյնս եւ իրենց հնագոյն Առակախօսն Եսովպոս († 550)։ Մանաւանդ որ արեւելեան գրականութեան հմտութիւնն դեռ ըստ բաւականին ամէն կողմ չտարածուած, այս հելլէն Առակախօսն առ հասարակ իբրեւ հնագոյնն կը նկատուէր քերթողութեան նոյն ճիւղին զբաղողներուն, եւ կը կարծուէր թէ ինք յառաջ քան զամենեւեան սկիզբն ըրած է Առակագրութեան։ — Բայց որչափ աւելի ծանօթացան եւ ուսումնասիրուեցան արեւելեան մատենագրութիւնք, այնչափ չափաւորեցաւ Եսովպոսի վրայ հնուց ի վեր եղած կարծիքն։ Այժմ հաստատուն իսկ կը համարուի՝ թէ նոյն Առակախօսին անուամբ առ մեզ հասած Առակք, այն ձեւով՝ որ արդ կը գտնուին, չեն բուն իւր գրութիւնք՝ որ կորսուեալ կը կարծուին։ Ուստի եւ մեր ունեցածներէն ոմանք անոր նախնաբար տուած օրինակին հետեւողութեամբ յօրինեալ կը կարծուին, իսկ ոմանք՝ յետնագոյն մատենագրաց գրութիւնք են։ — Այսպիսեաց կարգէն են անշուշտ այն սակաւաթիւ՝ բայց գեղեցիկ Առակք, որ ծանօթ են ի մերում մատենագրութեան Ողոմպիանու անուամբ։ (Տես Հանդէս ամսօր. 1890, էջ 250։)

Բայց կան նաեւ կարծողներ, թէ իրօք Եսովպեան Առակք շատ հին են, եւ թէ Հնդիկք զանոնք ի կիր արկած են եւ իրենց ըմբռնմանց համեմատ եղանակաւորած. սակայն անկէ յառաջ ալ իրենք ինքնագիւտ Առակներ ունէին։ Իսկ այս երկու տեսակ (Եսովպեան եւ Հնդկական) Առակաց մէջ այն մեծ խտիրը կը դրուի, որ Եսովպեանք զանասունս իւրաքանչիւրին բնածին յատկութեանց համեմատ խօսել ու գործել կու տան, ուր՝ Հնդկականք առանց այլեւայլ անասնոց բնաւորութեան միտ դնելու՝ զանոնք կը նկատեն իբրեւ անասնոյ կերպարանօք երեւցող մարդիկ, եւ այնպէս ալ խօսել ու գործել կու տան։ Եւ այս՝ անշուշտ պատճառած է իրենց կրօնէն, որ հոգեփոխութեան վրայ հիմնեալ է, ինչպէս յետոյ կը տեսնենք։

---

Այլով առթիւ (Անդ, էջ 249, ...) խօսած ենք մեր ազգային Առակաց վրայ, որոց մասին այն միայն կը մնայ դիտելիք՝ թէ արդեօք ունի՞ն յարաբերութիւն արեւելեան եւ մանաւանդ հնդկական Առակաց հետ, եւ թէ ինչպիսի՞ կապակցութիւն կայ անոնց եւ մեր հաւաքածոյից Առակներուն մէջ։

մի տարի ետեւ՝ Վ. Րայթ, Քեմպրիճի համալսարանին մէջ արաբերէնի ուսուցչապետն, նոյն նոր ասորի խմբագրութեան բնագիրն հրատարակեց (1884)։ Հետեւեալ (1885) տարին հրատարակեցաւ նոյնին անգլիերէն թարգմանութիւնն ի ձեռն Ց. Գ. Քէյթ-Ֆալգոնէրի, բաւական ընդարձակ ներածութեամբ եւ բազմաթիւ ծանօթութեամբք։

Որովհետեւ այս նոր ասորի խմբագրութիւնն արաբական խմբագրութեան վրայէն եղած է, կ'ենթադրուի թէ այնմ համաձայն գտնուի, ինչպէս արդեամբք ալ այնպէս է ըստ էական մասանց։ Բայց շատ տեղ անկէ կը տարբերի, ոչ միայն այնու՝ որ ընդհանրապէս աւելի ընդարձակ է քան զայն, այլ նաեւ այնու՝ որ յերկրորդականս ստէպ ստէպ այլազգ մանրամասնութիւններ եւ խօսակցութիւններ ի մէջ կը բերէ։ Այս տարբերութիւնք կրնան ծագիլ թէ անգլիերէն թարգմանութեան ծառայած ասորերէն օրինակէն, եւ թէ Սասիի հրատարակած արաբերէն օրինակէն, որ շատ տեղ կը խոտորի այլ արաբական օրինակներէն։

Արդ՝ գրութեանս նպատակին համար այսպիսի մանրամասնութիւնք կարեւորութիւն չունենալով, չենք ուզեր մխիլ ի քննութիւն բազմաթիւ տարբերութեանց այլեւայլ արաբերէն օրինակաց, այլ կը հետեւինք ասորերէն հին ու նոր խմբագրութեանց, ճշդագոյն եւս խօսելով, հնոյն՝ գերմաներէն թարգմանութեանն, եւ նորոյն անգլիերէն թարգմանութեան։ Արաբերէն օրինակներու տարբերութեանց յայնպիսիս միայն մտադրութիւն կ'ընենք ու կը նշանակենք՝ որ հայերէն Առակաց համար կարեւորութիւն ունին։

---

Թէպէտ հմուտ հրատարակիչք կը համարին թէ սանսկրիտ սկզբնագրին գլխակարգութիւնքն ու Գլխոց թիւն՝ այս երեք խմբագրութեանց մէջ՝ ընդհանրապէս պահուած են. սակայն երկու նկատմամբ եւս կան նաեւ ինչ ինչ տարբերութիւնք։ Եւ նախ գլխակարգութիւնն ամենուն մէջ ճշդիւ նոյն չէ. այս ինչ կամ այն Գլուխն՝ զոր մին յառաջ կը դնէ, միւսն յետոյ կը դասէ։ Բայց աւելի մեծ է խտիրն ի մասին թուոյ Գլխոց։ Ապահովապէս կը գիտցուի թէ բուն սանսկրիտ սկզբնագիրն ԺԳ Գլուխ ունէր։ Արդ՝ այժմու երեք խմբագրութեանց եւ ոչ միոյն մէջ նոյն թիւը պահեալ է։ Հին ասորական խմբագրութիւնն՝ ըստ հրատարակելոյն Պիքքէլի՝ ունի Ժ միայն Գլուխ կամ Դուռն։ Արաբականն՝ բնականապէս շատ աւելի Գլուխ ունենալու էր՝ թարգմանչին այլուստ ըրած յաւելուածոց պատճառաւ. որոց վրայ Սասիի օրինակին յաւելուածովքն՝ իւր հրատարակութիւնն կ'ունենայ ԺԸ Գլուխ։ Այս թուոյն վրայ պէտք է յաւելուլ այլ եւս Գ Գլուխ՝ որ չեն գտնուիր իւր օրինակին մէջ, բայց կան յայլ օրինակս ինչ, որով եւ թիւ Գլխոց կը հասնի մինչեւ ԻԱ։ Իսկ նոր ասորական խմբագրութիւնն ունի ԺԵ Գլուխ։

Բաւական կը համարինք այսչափ միայն համառօտիւ յիշատակել երեք խմբագրութեանց իրարու եւ բուն սանսկրիտ սկզբնագրին հետ ունեցած նիւթական տարբերութեանց վրայ. որովհետեւ աւելի մանրամասն տեղեկութիւնք չունին կարեւորութիւն մեր այժմու գրութեան համար։ Միայն հարկաւոր է մեզի համար նշանակել թէ Սասիի արաբական խմբագրութեան ԺԷ Գլուխն՝ որ կը համապատասխանէ նոր ասորականին Ժ Գլխոյն, այն է՝ Ճանապարհորդին եւ Ոսկերչին Առակն, չի գտնուիր ի հին ասորի խմբագրութեան, որովհետեւ յաւելուած է արաբերէն թարգմանչին։

Թարգմանութեանց՝ իրարմէ եւ բուն սանսկրիտ սկզբնագրէն ունեցած այս եւ ասոր նման նիւթական տարբերութիւններէն աւելի մտադրութեան արժանի է կրօնական սկզբանց եւ հիմնական գաղափարաց տարբերութիւնն՝ որ կը տեսնուի նոյն սանսկրիտ սկզբնագրին եւ հին ու նոր ասորի եւ արաբիկ խմբագրութեանց մէջ։ — Յայտնի է որ Հնդկաց կրօնն ի հնագոյն ժամանակաց Բուդդայական աղանդն է, որուն աւելի կը պատշաճի ամենաստուածեան՝ քան բազմաստուածեան կոչումն, եւ հիմնեալ է հոգեփոխութեան սկզբանց վրայ։ Ըստ այսմ գրութեան՝ մարդկան հոգիք այնչափ ժամանակ երկրիս վրայ մարմնոց ի մարմինս պիտի փոխուէին՝ մինչեւ առաւել քան զառաւել զտուելով, յաստուածութիւն դառնային կամ ինքնին աստուած ըլլային։ Իսկ եթէ փոխանակ ազնուանալու՝ վատթարանային, մահուանէ ետեւ նորէն աշխարհ գալով՝ մարդու մարմին պիտի չառնուին, այլ՝ նախընթաց վիճակին մէջ իրենց ունեցած վատթարութեան համեմատ՝ ի վիճակի ազնիւ կամ ստորին անասնոց, տնկոց, քարանց . . . պիտի ապրէին։

Արդէն այս գրութեան համեմատ յօրինեալ են Առակք, յորս անասունք իբրեւ բանաւորք կը վարին, կը խօսին ու կը գործեն. եւ այս՝ մեծ ապացոյց է Առակաց հնդկական ծագման։ Եւ կան իսկ ի հնդկական մատեանս այնպիսի Առակք՝ որ յայտնապէս ի մէջ կը բերեն զայն հոգեփոխութիւն, ոչ միայն յետ մահու, — զ. օ. նախընթաց կենաց մէջ անօրէն կեանք վարող իշխանին հոգւոյն՝ չնագայլի մարմնով կամ կերպարանօք նորէն աշխարհ դառնալուն Առակն. այլ նաեւ ի կենդանութեան իսկ, — զ. օ. աղջկան մ'ի մուկ փոխուիլն, եւ յետոյ նորէն իւր առաջին վիճակը դառնալն։

Արդ թարգմանիչք որպիսի կրօնէ ալ ըլլային, չէին կարող այս Առակաց հոգեփոխական նկարագիրը բոլորովին ջնջել՝ առանց ամենայն ինչ կերպարանափոխ ընելու. ուստի եւ ամէն խմբագրութեանց մէջ այնր հետքն առաւել կամ նուազ բացայայտ կը տեսնուին։ Բայց Քրիստոնեայք եւ Մահմետականք մեծապէս ջանացած են ամենաստուածեան եւ առաւել եւս՝ բազմաստուածեան գաղափարներն իրենց թարգմանութեանց մէջ անհետացընել. ուստի զայնպիսիս ամէն տեղ միաստուածեան սկզբանց համեմատ դարձուցած են։ Այսպէս են հին ասորի եւ արաբիկ խմբագրութիւնք։ Իսկ նոր ասորի խմբագրութիւնն յայսմ մասին շատ տեղ աւելի յառաջ երթալով եւ առջեւն ունեցած արաբերէնէն շեղելով, քրիստոնէական գաղափարներ կը մուծանէ, հին եւ նոր կտակարանին յատուկ խօսքերն ի ներքս կը խառնէ. ինչպէս յետոյ առիթ կ'ունենանք դիտելու։

(Շարունակելի։) Հ. Ղ. Յ.



# ԳՐԱԿԱՆ

## ՓՐ. ՄԻՒԼԼԵՐԻ ՔԱՆԻ ՄԸ ՆՈՐ ՅՕԴՈՒԱԾՆԵՐԸ

Փր. Միւլլէր երկու նոր հատած հրատարակած է Վիեննայի Արեւելագիտական Թերթին մէջ, եւ ասոնց կցած է այլեւայլ մանր դիտողութիւններ[1]։ Ասոնց առաջինն է “Ղազար Փարպեցի եւ Կորիւն„ վերնագրով հատուած մը։ Երկրորդը՝ Մխիթարայ Գոշի դատաստանագրոց Բաստամեանցի հրատարակութեան, եւ այս առթիւ նոյն գրոց հայ բնագրին վրայ տեսութիւն մըն է համառօտ։ Երրորդ մասը կը կազմեն այլեւայլ մանր դիտողութիւններ, բառերու մեկնութիւնք, այլեւայլ մատենագրաց բնագրաց ուղղութիւնք եւն։ Այս ամէն մասերուն թարգմանութիւնը կը դնենք հոս՝ իւր կարծեաց ստուգութեան առանց երաշխաւոր ըլլալ ուզելու։

---

## Ա.

*Ղազար Փարպեցի եւ Կորիւն։*

Ղազար Փարպեցի Մեսրոպայ գրոց գիւտը պատմելու ժամանակ իբրեւ իւր աղբիւրը կը յիշէ Մեսրոպայ աշակերտը՝ զԿորիւն։ Այսպէս կը դնէ

---

[1] Wiener Zeitschrift für die Kunde des Morgenlandes. V. Band. I. Heft, Wien, **1891**. — S. **36**—38. Гazar Pharbetshi und Koriun. — S. **52**—**58**. Mechithar Gōš. — S. **68**—**75**. Mittheilungen.

ՏԱՐԵԿԱՆ՝ ՏԱՃԿԱՍՏԱՆ ԵՒ ԱՅԼՈՒՐ 10 ՓՐ. ՌՈՒՍԱՍՏԱՆ՝ 4 ՌԲ. ՄԷԿ ԹԻՒ ԿԱՐԺԷ 1 ՓՐ. = 50 ԿՈՊ.

# ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ

1891
ԹԻՒ 7 ՅՈՒԼԻՍ
ՀԻՆԳԵՐՈՐԴ ՏԱՐԻ



ՎԻԵՆՆԱ. ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

եւս նոյն պատճառաւ նաեւ ճարտարապետական յատակն ալ ի բաց թողուած է։ Եւ սակայն ամենեւին հարկ չէ որ գրիչը ճշդիւ մեր այս մանրանկարն ընդօրինակած ըլլայ. բայց սոյգ օրինակած է նոյնպիսի օրինակ մը, ասորական ծնունդ մը, ինչպէս վարը պիտի տեսնենք։ Կայ վերջապէս երրորդ եղերապատ մ'ալ Մատթէի աւետարանին մէջ, զոր վերն էջ 208 յաջակողմն կանանց ի գերեզմանի՝ դրած ենք, որ կը ներկայացընէ առանձինն կին մը՝ որ խնկաման մ'ունի ձեռքը։

Եթէ հայեցուած մ'արձակենք այժմ հայ Աւետարանին կցուած միւս մանրանկարներուն, որոնցմէ 15ը սկիզբն է եւ 4ը վերջը, ամենեւին տարակոյս չի մնար որ ինչպէս փղոսկրեայ կողը՝ նոյնպէս ասոնք չեն կրնար Յովհաննու հայ գրչին գործն ըլլալ. եւ հետեւաբար 989 թուականը՝ միայն ամենամեծ զգուշութեամբ կրնանք ասոնց ալ մերձեցընել։ Այժմ փղոսկրեայ կողը կը նկատեմ՝ զատ ի սկզբան դրուած մանրանկարներէն, եւ զասոնք ալ զատ վերջը դրուածներէն։ Պիտի տեսնենք որ երեք խումբն ալ տարբեր տարբեր ծագում ունի։

---

# ԱԶԳԱԳՐԱԿԱՆ

## ՄԵՐ ԱՌԱԿԱՑ՝ ՀՆԴԿԱԿԱՆԱՑ ՀԵՏ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆ

(Շարունակութիւն։)

*Ներքին հանգամանք մատեանին:*

Առակաց հիւսուած մըն է ամբողջ գրութիւնն, որոյ այլեւայլ Գլուխք՝ ըստ ինքեան անկախ իրարմէ՝ այնու միայն կը կապուին, որ Հնդիկ թագաւորի մը՝ այս ինչ կամ այն հարցման կամ խնդրոյն պատասխան ու լուծում կու տայ իւր փիլիսոփայն, իւր սկզբունքն հաստատելով զանազան Առակօք։ Գլխաւոր Առակացս մեծագոյն մասին մէջ ընդելուզեալ են աւելի կամ նուազ թուով երկրորդական Առակք։ — Ահաւասիկ համառօտիւ Ա. Գլխոյն բովանդակութիւնն։

### Առակ Առիւծուն եւ Ցլուն։

Թագաւորն իւր փիլիսոփայէն կը խնդրէ որ իրեն ցուցընէ երկու ընկերաց կամ բարեկամաց օրինակն ու նմանութիւնն, որոց մէջ նենգաւոր մի մտնելով՝ անոնց սէրն ու բարեկամութիւնը սաստիկ թշնամութեան դարձընէ։ — Ի պատասխանի խնդրոյս՝ փիլիսոփայն կը պատմէ։

Հարուստ վաճառականի մի դատարկակեաց եւ շռայլ որդիքն հայրենի ինչքը վատնելով, հայրն զանոնք գործունեայ կենաց ու խնայութեան կը յորդորէ։ Ասոր վրայ երեց որդին առեւտրական ճանապարհորդութեան կ'ելլէ, բաց ի ծառայից եւ ի գրաստուց՝ հետն ունենալով երկու ցլով լծած կառք մի։ Այս ցլուց մին չափազանց աշխատութեամբ ուժէ իյնալով՝ ծառայի մի կը յանձնուի որ դարմանէ. բայց ծառայն շուտով կը ձանձրանայ, ցուլը կը թողու, եւ տէրը կը խաբէ՝ թէ Մեռաւ։ Իսկ ցուլն առատ ճարակ ու վճիտ ջուր գտնելով՝ կը զօրանայ ու կը պարարտանայ, եւ նոյն կողմերը կը մնայ։

Այն մօտերն առիւծ մի կար, որ ցլուն բառաչիւնը լսելով՝ այնչափ զարհուրեցաւ, որ ալ չէր համարձակեր իւր այրէն դուրս ելլել, եւ առուգութիւնն ու զուարթութիւնը կորոյս։ — Գազանաց թագաւորին դռնապանի պաշտօնը կը վարէին երկու շնագայլք, որոց միոյն անունն էր Գալիլա եւ միւսոյն՝ Տիմնա։ Վերջինս՝ առիւծուն վիճակն յարմար առիթ համարեցաւ անոր մերձենալու եւ հետն ընտանենալու, եւ ականջ չդնելով Գալիլայի դիմադարձութեան, սկսաւ գործով կատարել միտքը դրածն։ Այնչափ ճարտարութեամբ վարուեցաւ, այնպիսի խոհական խելք ցուցուց, որ ի սուղ ժամանակի տիրոջը սիրոյն ու վստահութիւնը շահեցաւ, եւ գրեթէ անբաժին եղաւ իրմէ։

Օր մի՝ երբ դարձեալ անոր մօտն էր, ցուլը բառաչելով, առիւծն այլայլեցաւ եւ խոստովանեցաւ՝ որ վերջին ժամանակներն իւր վրայ տեսնուած փոփոխութիւնն այն ձայնէն պատճառած է։ Տիմնա զինքն իւր զարհուրանքէն ազատելու համար՝ անոր հրամանաւը գնաց քանի մի անգամ ցլուն հետ տեսութիւն ըրաւ. եւ իւր ճարտարութեամբն երկու կողմանէ իրերն այնպէս յարմարցուց, որ առիւծուն հաւանութեամբը զցուլն հետն առած՝ անոր բնակարանը բերաւ։ Ցուլն ու առիւծն իրարու հետ յաճախ տեսակցելով, իրարմէ այնչափ հաճեցան, մինչեւ մտերիմ բարեկամ եղան։ Բայց այս նոր բարեկամութիւնն ի հարկէ վնասելու էր փառասէր շնագայլին, որ այնուհետեւ արդեամբք կորոյս իւր թագաւորին մտերմութիւնն։ Ասոր վրայ զգացած նախանձն այնչափ սաստկացաւ, որ միտքը դրաւ երկու բարեկամներն իրարմէ քակել. եւ այս նպատակին հասնելու համար որոշեց զցուլն սպաննել տալ առիւծուն։ Եւ այս անգամ եւս տեղի չտալով Գալիլայի խոհեմական խրատուց, իւր նենգաւոր խորհուրդն ի գլուխ հանելու ձեռնարկեց։

Նախ շատ աշխատեցաւ զառիւծն համոզել՝ թէ ցուլն իրեն դէմ դաւաճանութիւն կը նիւթէ, եւ կը յորդորէր որ աճապարէ զանիկայ սպաննէ. բայց որչափ ալ ջանաց՝ կարող չեղաւ զինքն համոզել։ Առիւծն այնչափ միայն յանձն առաւ որ յառաջին տեսութեան՝ ցլուն հետ զգուշութեամբ վարուի, եւ անոր վարմանց համեմատ ընթացք բռնէ։ Այսչափ յաջողութեամբ գոհ եղաւ Տիմնա՝ յուսալով ցլուն միջոցաւ լրացընել մնացածն։ Ելաւ անոր գնաց, եւ մեղմով ու կէս ծածուկ խօսքերով իմացուց թէ առիւծն իրեն հետ թշնամացած է։ Միանգամայն փոյթ տարաւ իրերն այնպէս կարգի դնել՝ որ առաջին անգամ երբ առիւծուն այցելութեան գայ՝ այն եղանակաւ վարուի, որ անիկայ համարի թէ իւր վրայ յարձակելու կու գայ։ — Լարած մեքենայն յաջող ելք ունեցաւ։ Ցլուն առաջին այցելութեան՝ երկու կողմանք ալ ըստ չարահնար թելադրութեանց նենգաւորին վարուելով, եւ ոչ վայրկեան մ'ունեցան իրարու հետ խօսելու՝ իրար հասկընալու. այլ անմիջապէս կռուոյ

ակսան, որով անմեղ ցաւն զոհ եղաւ նախանձոտ չնաւ-գայլին նենգաւոր հնարից։

Այս է Պիդփայի Առակք կոչուած մատենին Ա. Գլուխն, որոյ գլխաւոր Առակն համառօտելով յառաջ բերինք։ Սկզբնաբար՝ այս Գլխոյն միայն կը տրուէր Գալիլա ու Տիմնա անունն. բայց յետոյ ամբողջ մատենին վերնագիրն եղաւ։ — Առիւծուն եւ ցլուն Առակին մէջ ագուցեալ են իբր 12—15 երկրորդական Առակք, եւ այսու՝ նոյն Ա. Գլուխն այնչափ ընդարձակուած է, որ բոլորին քառորդը կը կացուցանէ։

*Նոյն մատենէն առնուած երեք հայերէն Առակք:*

Ինչպէս յառաջագոյն (էջ 176) ծանուցած ենք, այս հռչակեալ մատենէն եւ այլ այսմ նման հնդկական գրութիւններէն՝ մեր հաւաքածոյից անցած Առակաց երեքն առ ի հետազօտութիւն պիտի առնունք։ Այս երեք Առակք են.

Ա. Ճանապարհորդն ու Ոսկերիչն։

Բ. Կապիկն ու Կրիան։

Գ. Առիւծն, Աղուէսն ու Էշն։

Ա. Առակ։

ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՆ ՈՒ ՈՍԿԵՐԻՉՆ

Այս Առակ՝ որ առ մեզ շատ ցանցառ է, եւ հազիւ մեր հաւաքածոյից միոյն մէջ (Ոսկեփ. Թ. 51, Առակ Հ.) տեսած ենք, զոր եւ հրատարակած ենք (Հանդէս ամսօր. 1890, էջ 251) չի գտնուիր ի հին ասորի խմբագրութեան Պիդփայի Առակաց, այլ միայն արաբերէն եւ նոր ասորի խմբագրութեանց մէջ։ Բայց կայ Փանչաթանթրայի մէջ, ուստի եւ սկզբնական ծագումն հնդկական է։

Սոյն Առակին հայ խմբագրութեան նկատմամբ մեծապէս արժանի է մտադրութեան այն պարագայն, որ այս՝ որչափ դիտած ենք՝ միակ Առակն է մեր հաւաքածոյից մէջ, որ հնդիկ Առակաց սովորական ձեւովը կը սկսի։ "Եհարց թագաւոր մի իմաստասէր իւր եւ ասէ՝ թէ Ցի՞նչ իրք վստահանալ պարտ է մարդոյ։ — Ասէ իմաստասէրն. Ամենայն իրաց վստահ լեր՝ զատ ի մարդոյ։ — Ասէ թագաւորն՝ թէ Ո՞րպէս։ — Ասէ իմաստասէրն. Ի ճանապարհի մի վերայ…"։

Առակին առաջին կէսն, — այն է՝ ճանապարհորդին ի ջրհորն ինկած անասուններն ու ոսկերիչն ազատելուն, անոնց իրենն ըրած երախտագիտութեան խոստման, նոյնպէս յետոյ կապկին հանդիպելուն դէպքերն, — առանց բառ առ բառ նոյն ըլլալու, քանի մի փոքր բացառութեամբք՝ հայերէնին հետ նոյնիմաստ է օտար խմբագրութեանց մէջ։ Բայց երկրորդ կէսն՝ սկսեալ վագրին պատահելէն, շատ տարբեր է ի նոյն օտար խմբագրութիւնս։ Ահաւասիկ Նոր ասորի խմբագրութեան պատմածն, — որոյ հետ ըստ մասին կը միաբանին նաեւ արաբերէնն, եւ ըստ մասին անկէ կը տարբերի։

…"Կապկէն բաժնուելէն ետեւ՝ (ճանապարհորդն) զվագրը տեսաւ, որ զինքն ուրախութեամբ ընդունելով՝ ըսաւ. Օրհնեալ է գալուստդ։ Ես ստացուած չունիմ. բայց սակաւ մի ինծի սպասէ, եւ կը ջանամ քեզի պարտական եղածս հատուցանել։ Այս ըսաւ, եւ գնաց թագաւորին աղջիկն սպաննեց, առաւ անոր գոհարեղէններն եւ ճանապարհորդին բերաւ՝ ըսելով. Առ զայս եւ կարօտութիւնքդ լեցու։ Իսկ ճանապարհորդը չիմացաւ թէ ուստի կը բերէ։

"Նոյն միջոցին այս վերջինս ինք իրեն կը խորհէր. Եթէ ասոնք որ անխօս անասուն են՝ իրենց պարտքն այսպէս լաւ կատարեցին, ապա որչափ եւս առաւել պիտի կատարէ բանաւոր էակ մի։ Երթեմ ոսկերչին երթամ, այս գոհարեղէններն իրեն յանձնեմ՝ որ ծախէ. գնոյն մի մասն աղքատաց տայ եւ սակաւ ինչ ինք առնու, սակաւ մաս մ'ալ ես ինծի պահեմ աղքատութեանս օգնելու։ Այս խորհրդով ոսկերչին տունը գնաց, որ զինքն ուրախութեամբ ընդունեցաւ՝ մանաւանդ երբ հետն ունեցած ոսկեղէնները տեսաւ։ Եւ ճանչնալով որ թագաւորին աղջկանն են, առաւ թագաւորական պալատը տարաւ, եւ դռնապանին ըսաւ՝ թէ Թագաւորին զրուցելու կարեւոր խօսք մ'ունիմ։ Դռնապանն աճապարեց թագաւորին գնաց՝ իրն իմացուց եւ զինք ներս մտցուց։ Ոսկերիչը թագաւորին առջեւ դրաւ ոսկեղէններն ու ըսաւ. Աղջիկդ մեռցընող եւ ոսկեղէններն առնող մարդն իմ տունս է։ Անմիջապէս բռնուեցաւ ճանապարհորդն, եւ թագաւորին առջեւն հանուեցաւ, որ վճիռ կտրեց թէ զինք ձաղկեն, քաղքին չորս կողմը պտըտցընեն՝ առջեւէն քարոզ կարդալով՝ թէ Այս մարդն է թագաւորին աղջիկն սպաննողն, եւ յետոյ խաչեն։ Երբ այս հրամանք կատարուելով, ճանապարհորդն ի խաչ հանուեցաւ, սկսաւ լալ եւ ինք իրեն կ'ըսէր. Եթէ անասնոց խորհրդոյն անսայի՝ այս չարիք գլուխս չէին ի գար։

"Օձն իւր բարերարին ձայնը լսելով՝ երբ ծակէն դուրս ելաւ եւ զինք խաչէն կախուած տեսաւ, շատ տրտմեցաւ. հնարք մտածեց զանիկայ ազատելու, եւ մեղմով սողոսկելով՝ գնաց թագաւորին որդին խածաւ։ Թագաւորն այս դէպքն որ լսեց՝ կանչել տուաւ դիւթերն ու թովիչներն, որք թէպէտ իրենց դիւթական արուեստներն ի գործ դրին, սակայն օգուտ չկրցան ընել, մանաւանդ թէ արքայորդւոյն վիճակն աւելի վատթարացաւ։ Նոյն միջոցին յերազի յայտնուեցաւ արքայորդւոյն, որ Եթէ այն ճանապարհորդը չգայ իւր ձեռքը վիրացդ վրայ դնէ, բժշկուելիք չունիս. որովհետեւ յանիրաւի մահուան դատապարտուած է։ Թագաւորն այս լսելով՝ հրամայեց որ խաչէն վար առնուն եւ իրեն բերեն։ Երբ առջեւն ելաւ, Կը բաղձամ, ըսաւ թագաւորն, որ ինծի պատմես քու հանգամանքդ, անձինդ վրայ տեղեկութիւն տաս, եւ յայտնես թէ ինչու այս քաղաքս եկած ես։ Ճանապարհորդն իւր պատմութիւնն սկզբէն մինչեւ վերջը պատմեց։ Ասոր վրայ թագաւորն ըսաւ. Բժշկէ որդիս օձի խածուածէն, որպէս զի զրուցածներդ հաստատուին։ Ճանապարհորդն ինչ ընելիքը չգիտնալով, աչուըներն երկինք վերցուց եւ ըսաւ. Տէր Աստուած, եթէ ճշմարիտ են բածներս, եւ ամենեւին սուտ չկայ անոնց մէջ, բժշկութիւն շնորհէ արքայորդւոյն, եւ այսու իմացուր թագաւորին եւ ներկայ եղողներուն՝ որ խօսածս ճշմարտութիւն է։ Եւ անմիջապէս արքայորդին բժշկուեցաւ, այնպէս որ թագաւորն եւ ամէն մօտաւորք զարմացած մնացին։ Այն ժամանակ ըստ հրամանի թագաւորին՝ ամէնքը մեծ պատիւներ ըրին ճանապարհորդին եւ պարգեւներ տուին։ Իսկ ի մասին ոսկերչին՝ հրամայեց թագաւորն որ զինք սաստիկ ձաղկեն եւ յետոյ խաչեն։ Վասն զի, ըսաւ, ուր անխօս անասունք իրենց պարտականութեան հատուցումն ըրին, ինք որ բանաւոր մարդ է՝ ապերախտութիւն եւ խարդախութիւն գործեց"։

Վերյիշատակեալ միւս երկու Առակք մեզի ծանօթ երեք խմբագրութեանց մէջ ալ կը գտնուին, եւ երկուքն ի միասին իբրեւ միակ Առակ յառաջ կը բերուին։ Առաջինն եւ գլխաւորն է՝ Կապկի ու Կրիայի Առակն, եւ յայնմ ագուցեալ է երկրորդն, որ է՝ Առիւծուն, Աղուէսուն ու Էշուն Առակն։ — Այս երեք օտար խմբագրութիւնք, թէպէտ ըստ էական մասանց իրարու հետ միաբան են, բայց ըստ երկրորդական պարագայից ու մանրամասնութեանց եւ խօսակցութեանց ոչ սակաւ կը տարբերին ի մի-

մեանց։ — Ցիշեալ խմբագրութիւնք շատ ընդարձակ ըլլալով, բաւական կը համարինք անոնց համառօտ բովանդակութիւնն եւեթ ի մէջ բերել, ի մի ամփոփելով զամենայն, եւ միայն քանի մի գլխաւոր տարբերութիւնքը նշանակելով։ Եւ որովհետեւ նոյն օտար խմբագրութեանց ի միասին յառաջ բերած երկու Առակներն՝ մեր ձեռագրաց մէջ իբրեւ զատ ու իրարմէ անկախ Առակք պահուած են, մենք ալ իրարմէ կը բաժնենք, սկսելով գլխաւորէն, որ կը գտնուի յՈսկեփ. 51. Առակ ՄԼԴ. եւ յԱղուեսագ. Առ. ԽԱ.

## Բ. Առակ։

### ԿԱՊԻԿՆ ՈՒ ԿՐԻԱՅՆ (ԸՍՏ ՀԱՅ ԽՄԲԱԳՐ.)

Առի յառակաց՝ թէ Աղոռուչն արար թագաւորութիւն վաթսուն տարի։ Յորժամ ծերացաւ՝ հանին զնա, եւ բերին զայլ մանկագոյն եւ եդին իւրեանց թագաւոր։ Եւ նա երթայր լալով ի յեզր ծովուն։ Եւ ահա պատահեցաւ նմա ծառ մի թզենի լի պտղով. եւ ելեալ ի ծառն բնակեցաւ, եւ ուտէր ի ծառոյն եւ գոհանայր զԱստուծոյ։ Եկեալ առ նա մեծ կրիայ մի՝ սովորեցաւ, եւ գայր յոտս ծառոյն, եւ Աղոռուչն ձգէր ի ծառոյն զթուզ, եւ նա ուտէր եւ գոհանայր զնմանէ։ Եւ յետ բազում ժամանակաց ասէր կրիայն ընդ Աղոռուչն. Արեկ՝ որ տանիմ զքեզ ի կղզին առ ազգն իմ, որ պատուեն զքեզ եւ քո աղէկին աղէկ առնեմ, զի գոհացեալ եմ զքէն առ ազգն իմ։ Եւ Աղոռուչն հաւատաց նմա վասն երախտեացն զոր արարեալ էր ընդ նմա. էջ ի ծառէն եւ նստաւ ի վերայ թիկանց կրիային, եւ սկսաւ գնալ ի ծովն ի ներս։ Եւ իբրեւ հեռացան ի ցամաքէն, ասէ կրիայն. Գիտացիր, եղբայր իմ սիրելի կապիկ, զի կին իմ հիւանդ է, եւ ասացին բժիշկքն՝ թէ զկապկի սիրտն եւ զերիկամունսն եփեսցեն, ու զջուրն առէք որ խմէ, որ առողջանայ։ Զքեզ այնոր համար կու տանիմ։

Կապիկն իբրեւ լուաւ՝ կանչեց իւր ամէն զօրութեամբն եւ ասէ. Հազար վայ զիս եւ շատ աւաղ է՝ որ չկայ ի հետս։ Դարձիր, եղբայր, դարձիր, որ արենտէր չլինիմ, որ առնում զսիրտն իմ եւ զերիկամունսն իմ. զի մեր սովորութիւն է, որ ի ծառն կախեմք՝ յորժամ ի ճանապարհ երթամք. եւ շատոց առողջութիւն եղեալ է Աստուծով։ Եւ կրիայն հաւատաց Աղոռուչոյին, դարձաւ եւ գնաց ի ծառի տակն, եւ Աղոռուչոյն վազեց եւ ի ծառն ելաւ։ Եւ կրիայն ասէ. Փութա եւ եկ ճարտար, որ ժամանեմք հիւանդին։ — Ասէ կապիկն. Թէ ես այլ հաւատամ քեզ եւ իջնում ի ծառէս, քան զէշն անմիտ լինիմ՝ որ զերծաւ ի բերանոյ առիւծոյն եւ անկաւ դարձեալ ի ձեռն կամաւ, եւ սատակեցաւ։ — Եւ ասէ կրիայն. Դատիս յԱստուծոյ, զի սուտ ասացեր։ — Եւ կապիկն ասէ. Դու դատիս յԱստուծոյ, որ ինձ զստութիւն ուսուցեր։ Եւ ասէ. Վարձք է՝ որ ստով ապրեցայ ես, որպէս կաքաւն եւ չիտն՝ որք խաբեցին եւ ապրեցան[1]„։

#### Ըստ օտար խմբագրութեանց։

Ովկիանոսի կղզեաց միոյն վրայ երկիր մի կար, կապկաշատ, որոյ չորեքձեռնի բնակիչքն իրենց յատուկ թագաւորն ունէին։ Դէպ եղեւ՝ որ ժամանակին թագաւորն ծերութեան եւ հիւանդոտութեան պատճառաւ՝ չկարենալով այլ եւս յառաջ վարել այս կապկական տէրութեան կառավարութիւնն, իրեն յաջորդ ունեցաւ երիտասարդ կապիկ մի։ Գահակորոյս արքայ-կապիկն սկսաւ կամաց կամաց իւր արքունիքէն հեռանալ, եւ

[1] Ակնարկութիւն երկու Առակաց, որ շատ սովորական են ի հաւաքածոյս։ Տես յԱղուեսագ. Առ. ՃԴ. եւ ՃԵ։

այնչափ յառաջ գնաց՝ մինչեւ լճի մի եզերքն (ծովեզրն) հասաւ, ուր թզենւոյ մի վրայ բնակութիւնն հաստատեց եւ թուզ ուտելով կ'ապրէր։ Անգամ մի փրցուցած թուզն ըստ պատահման ջուրն իյնալով, կրիայ մի վրայ հասաւ եւ առաւ կերաւ։ Եւ որովհետեւ թզոյն ջուրն ինկած ժամանակ հանած ձայնն շատ ախորժական հնչած էր կապկին ականջն, սկսաւ հետզհետէ փրցընել եւ վար նետել։ Իսկ կրիայն կարծելով թէ յատուկ իրեն համար կը նետէ, սրտին մէջ երախտագիտութեան եւ բարեկամութեան զգածմունք ծնաւ։ Այսպէս երկու դրացեաց մէջ կապակցութիւն մտաւ, որ սակաւ սակաւ անձուկ մտերմութեան դարձաւ, այնչափ՝ մինչեւ ալ կապիկն չէր յիշեր իւր կորուսած գահն, եւ ոչ կրիայն՝ իւր ընտանիքն. եւ այնուհետեւ երկայն ժամանակ խաղաղ եւ հաճոյական կեանք կ'անցընէին։

Այսպէս մանր մանր տարբերութեամբք երեք օտար խմբագրութիւնք։ — Բայց աստ կը սկսին իրարմէ տարբեր աւանդել։ — Հին աորի խմբագրութիւնը կ'ըսէ։

..."Կրիային էգն իւր էրկանն այնչափ երկարժամանակեայ բացակայութիւնը տեսնելով, մեծ տխրութեան մէջ ինկաւ, եւ բարեկամուհեացն ըսաւ. Նայեցէք՝ որչափ ժամանակ է՝ որ ամուսինս զիս թողուց գնաց, եւ ամենեւին լուր չի տար. վախնամ՝ գլուխն արկած մ'եկած է։ — Բարեկամուհեաց մին պատասխանեց. Մի տխրիր, սիրելի. ես լսեցի որ էրիկդ ողջ առողջ ծովեզրը կը նստի կապկի մի հետ, նոյն տեղը կ'ուտէ կը խմէ եւ հանգիստ է։ Ինչո՞ւ հոգ կ'ընես՝ երբ ինք զքեզ թող է տուեր եւ ալ զքեզ չի հոգար։ — Ասոր վրայ էգն ընկողմնեցաւ, բոլոր օրը սգոյ ու լալու հետ եղաւ եւ մեծ տխրութեան մէջ մնաց։ — Սակաւ ժամանակ յետոյ իւր այրիկն ինք իրեն ըսաւ. Որչափ ատեն է՝ քանի որ տնէս բաժնուած եմ։ Այս զլուցեց, եւ ելաւ տունը դարձաւ„։

Նոր աորի խմբագրութիւնն իրը տարբեր կը պատմէ։ Իգին տխրութիւնն ու բարեկամուհեաց միոյն խօսքն նախընթացին նման վիպելէն ետեւ, մանրամասն կը պատմէ՝ թէ ինչպէս նոյն բարեկամուհիք դաւաճանութեան ծրագիր մի յօրինեցին ոչ միայն զկրիայն կապկէն հեռացընելու, այլ նաեւ զկապիկը մեռցընելու։ Ըստ այսմ ծրագրի՝ կրիային էգն նստաւ անմիջապէս իւր ամուսնոյն նամակ գրեց՝ թէ ծանր ու վտանգաւոր հիւանդութեան բռնուած եմ. եւ էրկանը կ'աղաչէր որ շուտով տուն դառնայ՝ քանի որ ինք մեռած չէ։ Կրիայն այս նամակը կարդաց կապկին, որ զինքն յորդորեց անդանդաղ երթալու, որպէս զի ըստ խորհրդոյ բժըշկաց՝ դեղ ու դարման գտնէ կինն առողջացընելու։ Ուստի նոյն նամակին զօրութեամբն եւ կապկին յորդորմամբն եղած կը դնէ կրիային ի ճանապարհ ելլելն եւ ընտանեացը դառնալն, ուր՝ հին աորերէնն, ինչպէս տեսանք, առանց բարեկամին գիտութեան եղած կը պատմէ ճանապարհորդութիւնն։

Սասիի արաբական խմբագրութիւնն՝ շատ համառօտ կ'անցնի այս մասն։ Էգ կրիայն, կ'ըսէ, իւր ամուսնոյն երկայն բացակայութեան վրայ հոգի մէջ ինկաւ, եւ քննքատելով դրացուհւոյն ըսաւ. Վախնամ գլուխը դժբախտութիւն մ'եկած է։ Դրացուհին զինքն հանդարտեցուց, պատասխանելով. Էրիկդ ծովեզերաց մօտ ծանօթացած է կապկի մի հետ, որ իւր ուտելիքն ու խմելիքը կը հոգայ։ — Սակաւ մի յետոյ արու կրիայն ելաւ տունը գնաց[1]։

[1] Կուբիտ այլ օրինակներէ առնլով՝ կը դնէ աստ, որ կրիայն կապկէն բաժնուելու ժամանակ՝ Մնաս բարով ըսաւ. եւ կը շարունակէ բաւական երկայն Հատած մի յառաջ

Ասկէ զատ երկու ասորի խմբագրութիւնք միաբան կը վիպեն կրիային իւր տունն հասած ժամանակն՝ կնոջն, անոր բարեկամուհեաց եւ իւր մէջ պատահածներն, եւ յառաջ կը բերեն եղած խօսակցութիւնները։ Սրտաշարժ եղանակաւ կը նկարագրեն կրիային վարանքն՝ երբ իմացաւ թէ կնոջն հիւանդութեան միակ դարմանն է կապկի սիրտ, եւ թէ չկայ այլ ճար զայն հոգալու՝ բայց միայն իւր բարեկամ կապիկը զոհել։ Մի կողմէն ամուսնական սէրն եւ ի միւս կողմանէ բարեկամութեան եւ երախտագիտութեան զգածմունքն իրարու դէմ ի կռիւ ելած՝ զինք կը չարչարէին եւ թող չէին ի տար որոշման մի գալ։ Վերջապէս յաղթող եղաւ գութն ամուսնական եւ անձնական շահն. ուստի յուղի անկաւ՝ որոշելով որ իւր բարեկամ կապիկն հետն առած տուն դառնայ։

Այս տեղ նոր ասորի խմբագրութիւնն շեղելով ի հնոյն՝ կը պատմէ կրիային շինած ծրագիրն, որ միտքը դրաւ զկապիկն համոզել հետն երթալու, զինք իւր ընտանեաց բնակարանին մօտերը տանիլ ու անսուաղ թողուլ՝ մինչեւ մեռնի, եւ յետոյ կուրծքը բանալ, սիրտն առնուլ կնոջը տանիլ։ Այս վախճանաւ տնէն ելած ժամանակ հետը դանակ մ'առաւ։ — Այս կտորն յաւելուած է նոր ասորի խմբագրութեան, որ արաբերէնին մէջ չկայ[1]։

Կրիային այս ճանապարհորդութենէն դարձած ժամանակ՝ իւր եւ կապկին մէջ եղած խօսակցութիւնն իրարմէ տարբեր յառաջ կը բերեն այլեւայլ խմբագրութիւնք։ Այս խօսակցութենէն փոքր մաս մի յետոյ կը տեսնենք։ — Նոյն օտար խմբագրութիւնք եւս հայերէնին հետ յայնմ կը միաբանին, որ կապիկն՝ կրիային խաբէական ու կեղծաւորական խօսիցն հաւատալով, յանձն առաւ հետն երթալ։ Ուստի ցատքեց վրան ելաւ, եւ կրիայն սկսաւ զինք դէպ իւր ընտանեաց բնակարանը տանիլ։

Առակին մնացեալ մասն՝ թէեւ օտար խմբագրութեանց, մանաւանդ երկու ասորականաց մէջ, հայերէնէն շատ աւելի երկայն է, սակայն ըստ իմաստին մեծ տարբերութիւն չի տեսնուիր։ Միայն կապիկն՝ զինք ճարտարութեամբ ետ դարձընել տալէն, եւ թզենւոյն վրայ ելլելով՝ ապահովեալէն ետեւ, երբ կրիայն զինք կը փութացընէր նորէն ետ դառնալու, ըստ օտար խմբագրութեանց՝ իշուն կրկին անգամ խաբուելուն Առակը պատմեց, ուր՝ ի հայերէնն լոկ ակնարկութիւն կայ նոյն Առակին։

Իսկ երկու հին բարեկամաց՝ իրարմէ ընդ միշտ բաժնուելուն առթիւ՝ ըրած խօսակցութիւնն իւրաքանչիւր խմբագրութիւն զատ կերպով յառաջ կը բերէ։ — Հայերէնն, ինչպէս տեսանք, սակաւ բանիւք կը վերջացընէ, որ իրարու փոփոխ յանդիմանութիւն է միայն։ — Հին ասորի խմբագրութիւնն եւ արաբերէնն աւելի երկայն եւ գոյն տարբերութեամբ իրարու հետ նոյնիմաստ խօսակցութիւն մ'ի մէջ կը բերեն։ — Այս երկուքէն կը տարբերի նոր ասորի խմբագրութիւնն, որ այնու մանաւանդ մտադրութեան արժանի է, որ երկու խօսակցաց բերանը քրիստոնէական գաղափարաց համեմատ խօսքեր եւ ի Ս. Գրոց առեալ վկայութիւններ կը դնէ, եւ իրարմէ սիրով եւ բարեկամութեամբ բաժնել կու տայ։ Առանձինն իմն մեծ անյիշաչարութեամբ խօսել կու տայ կապկին, որով եւ Առակը կը վերջացընէ ըսելով. “Կրիայն երբ զայս ամենայն լսեց, այնպէս ամչցաւ, որ գետինն ինկած՝ երկրպագութիւն ըրաւ, եւ ելաւ ամօթով տունը գնաց„։

Յօտար խմբագրութիւնս՝ իբրեւ նախընթացին ամբողջացուցիչ մասն՝ յառաջ բերեալ երկրորդական Առակն, ինչպէս յիշատակեցինք, իբրեւ ինքնակաց Առակ կը գտնուի մեր հաւաքածոյից ոչ սակաւուց մէջ։ Եւ ունի իսկ երկու ընթերցուած, որ ըստ իմաստին նման՝ սակայն մին համառօտագոյն է քան զմիւսն՝ որ սովորականն է։

### Գ. Առակ։

### ԱՌԻՒԾՆ, ԱՂՈՒԷՍՆ ՈՒ ԷՇՆ (ԸՍՏ ՀԱՅ ԽՄԲԱԳՐ.)

*Սովորական ընթերցուած։*

Առիւծն հիւանդացաւ եւ յուղարկեաց բժշկաց խնդիր, թերեւս դեղ ասեն ցաւոցն։ Եւ եկեալ բժշկապետացն եւ ասեն ընդ առիւծն՝ թէ քո ցաւոյդ այլ դեղ չկայ՝ քան որ զիշուն ականջսն կտրեն եւ զսիրտն հանեն եւ տան՝ որ ուտես եւ աղէկնաս։ Ասէ առիւծն ընդ աղուէսն՝ եթէ կարե՞ս էշ մի գտանել եւ բերել։ Եւ ասէ աղուէսն. Խիստ շուտով կատարեմ զհրամանս քո. քանզի ունիմ ինձ եղբայր՝ էշ մի, եւ է խիստ սատրիկ գէր։ Եւ գնաց աղուէսն առ էշն եւ ասէ. Ո՛ բարի եւ հեզ էշ, այժմ գիտացիր՝ զի մեծ փառաց կամիմ հասուցանել զքեզ։ Քանզի առիւծն՝ որ է թագաւոր գազանաց, հիւանդացեալ է եւ մօտ ի մահ է, եւ ուզէ որ տեսանէ զքեզ եւ զթագաւորութիւնն ի քեզ տայ։ Եւ հաւատաց էշն խաբողական բանիցն եւ եկն առ առիւծն։ Եւ կամէր համբուրել զառիւծն. եւ առիւծն զբերանն եբաց եւ կամէր խեղդել զէշն, եւ իշուն փրթեալ փախեաւ։ Եւ հասեալ աղուէսն իշուն՝ ասէ. Ա՛յ անմիտ. ընդէ՞ր փախեար։ Եւ ասէ էշն. Ի համբուրելն կսկծեցոյց զիս։ Եւ ասէ աղուէսն. Այն ի սաստիկ սիրոյն էր. դարձիր եւ մի փախչիր։ Եւ եկն էշն առ առիւծն. եւ առիւծն կալեալ զփողք իշուն, խեղդեաց, եւ աղուեսուն հանեալ զսիրտ իշուն եւ զա-

*Համառօտագոյն ընթերցուած։*

Առիւծն հիւանդացաւ եւ եկեալ բժշկացն եւ ասեն. Այս ցաւոյս դեղն այն է՝ որ եփեն զսիրտ եւ զականջ իշոյն, եւ զջուրն տան որ խմէ առիւծն եւ ողջանայ։ Կոչեցին զաղուէսն եւ ասեն. Արա հնար եւ բեր էշ մի։ Ասէ. Այո, իմ եղբարք. էշ մի կայ յայս անուն հովիտ՝ սատրիկ գէր։ Գա աղուէսն եւ ասէ ցէշն. յՈ՛վ բարի եղբայր, երանի է քեզ, զի գտի զքո աւագ եղբայրն, եւ ցանկայ տեսանել զքեզ, եւ է նա թագաւոր, եւ դու ընդ նմա թագաւորես։ Եւ հաւատաց էշն, եւ եկն ի համբուրել զառիւծն. եւ կամէր առիւծն խեղդել զէշն, եւ էշն փախեաւ։ Եւ հասեալ նմա աղուէսն եւ ասէ. Ընդէ՞ր փախչիս։ Եւ ասէ էշն. Ցաւեցոյց ի համբուրելն՝ զփողս իմ։ Եւ ասէ՝ աղուէսն. Այն ի սաստիկ սիրոյն է. ապա թէ դու զնա համբուրես՝ ուրախ լինի։ Եւ դարձաւ էշն ի համբուրել զառիւծն. եւ (առիւծն) կալեալ զփողս նորա մեռոյց զէշն, եւ գնաց ի հանգչել։ Եւ աղուէսն հանեալ զսիրտն եւ զականջսն եւ կերաւ. եւ ասէր. Թէ դեղ է՝ նա լաւ է ինձ քան առիւծուն։ Եւ գնաց առ բժիշկ(+)ն եւ առիւծն, եւ ասէ՝ թէ Մեծ զարմանք է, զի էշն այն ոչ սիրտ ունի եւ ոչ ականջ։ Եւ եկին տեսին զի ոչ ունէր, զարմացան։ Եւ ասէ աղուէսն. Մի զարմանայք, զի եթէ դա սիրտ ունէր կամ ականջ,

---

բերելով (էջ 57—60), որ մասամբ իւիք նման է երկու ասորերէններուն ի յաջորդան պատմածին, մանաւանդ կրիային եւ կապկին մէջ՝ առաջնոյն ետ դարձած ժամանակն՝ եղած խօսակցութեան։

[1] Ի նախընթաց ծանօթութեան յիշատակեալ հատածին մէջ այնչափ միայն կ'ըսուի՝ թէ կրիայն միտքը դրած էր կապիկը նենգութեամբ իւր կղզին տանիլ։

մէջ) ի գլուխ ելլելէն ետեւ, անհետ կորուսեալ է նոյն մատենին սանսկրիտ սկզբնագիրն։

Բ. Ապա ուրեմն հարկ էր որոնեմք յայլեւայլ թարգմանութիւնս։ Եւ բնականապէս մեր ուշադրութիւնն յառաջ քան զամենայն՝ դառնալու էր Գալիլա ու Տիմնա գրոց պարսկական Նասրուլլահեան։ Բայց զայն եւս միակողմն թողլու կը ստիպուէինք, գիտնալով թէ այն ալ սանսկրիտ սկզբնագրին բախտին հանդիպած է։ Ուստի մեր խնդրոյն լուծումը գտնելու համար՝ պէտք էր որ կապուէինք նոյն պահլաւերէնի վրայէն եղած թարգմանութեանց, որոնցմէ՝ ինչպէս գիտենք՝ հին ասորականն եւ արաբականն ուղղակի առնուած են. իսկ մնացեալքն, այն է՝ Նոր ասորականն, յունականն, պարսկականն, եբրայականն եւ այլք, արաբականին միջոցաւ։

Արդ՝ ուշի ուշով կարդալով նոյն խմբագրութիւններէն ոմանց եւրոպական թարգմանութիւնն, մօտէն հետազօտելով անոնց վրայ մանրամասն տեղեկութիւն տուող Ուսումնասիրութիւնքն՝ մանաւանդ Պենֆէյին, այս համոզումն ստացանք որ մեր մատղրութիւնն ամփոփելու ենք հին ասորականին, արաբականին եւ Նոր ասորականին վրայ։ Վասն զի տեսանք որ մեր Առակք չեն կրնար — ի բաց առեալ զնոր ասորականն, — արաբերէնի վրայէն եղած այլ թարգմանութեանց եւ ոչ միայն հետեւողութեամբ խմբագրուած ըլլալ։ Ստոյգ է՝ սոնք ալ, եթէ դուրս հանենք զպարսկերէնն, պարզ եւ անզարդ են արաբերէնին պէս, եւ ոմանք՝ ըստ բաւականին համառօտ. բայց սոնք իրենց պարզութեամբն ու համառօտութեամբն ալ՝ մեր Առակներէն շատ տարբեր ոճով խմբագրեալ են։ — Սակայն եւ այնպէս աւելորդ չենք համարիր տեղեկութիւն տալ պարսիկ խմբագրութեանց վրայ, որովհետեւ մեր ռամկագիր հեղինակներէն ոմանց պարսկերէնի ծանօթ ըլլալն՝ ըստ երեւոյթին հաւանական կը ցուցնէ նոյն խմբագրութեանց կիրարկութիւնն։

Գալիլա ու Տիմնա՝ քանի մի նախընթաց փորձերէ ետեւ, ԺԲ. դարուն առաջին քառորդին (իբր 1120ին) արաբերէնի վրայէն պարսկերէնի թարգմանուած է. բայց այնչափ փոփոխութեամբք եւ յաւելուածովք կերպարանափոխ եղած, այնպիսի բանաստեղծական զարդուք ճոխացած, մինչեւ բոլորովին Նոր գրութիւն կրնայ համարուիլ աւելի՝ քան արաբերէնի հետեւողութեամբ աշխատասիրեալ խմբագրութիւն։ Ոճն ու լեզուն ալ այն աստիճանի բարձր էին, որ հազիւ մեծամեծ ազատանին եւ հմտագոյն գրագէտք կարող էին հասկընալ։ Այս պատճառաւ՝ չորս դար յետոյ սոյն առաջին խմբագրութեան վրայէն՝ Էնվարի սուհէյլի անուամբ երկրորդ խմբագրութիւն մի յերեւան ելաւ, որ նախընթացէն պարզագոյն՝ ուստի եւ աւելի դիւրամատոյց պիտի լինէր ժողովրդեան։ Բայց այս երկրորդս եւս շատ զարդարուն համարուելով, վրան մի դար չանցած՝ Իյարէ տանիշ վերնագրով երրորդ խմբագրութիւն մ'ելաւ առաջին երկուքէն պարզագոյն։ (Սասի, Mém. histor. էջ 37—51։)

Աւելորդ եւ ոչ այնչափ դիւրին էր հետազօտել զԱ. Պրս. խմբգր. ուստի աչքէ անցուցինք Բ.ին անգլիերէն թարգմանութիւնն եւ զՀումայուն-նամէն՝ որ ըստ Սասիի (անդ, էջ 52) յամենայնի համաձայն է նոյն Բ. պարզեալ խմբագրութեան։ Սակայն նաեւ սոոր ծաղկալից եւ բանաստեղծական զարդուք եւ այլաբանութեամբք խճողեալ ոճն շատ հեռու գտանք ի պարզութենէ հայերէն Առակաց, որ յայսմ մասին աւելի նման են արաբականին եւ ասորականաց։ — Յետոյ առիթ կ'ունենանք փոքր օրինակ մ'ի մէջ բերելու այս Բ. Պրս. խմբագրութենէն։

Գ. Շատ հաւանական եւ գրեթէ ստոյգ կրնայ համարուիլ թէ ազգային Առակագրաց անծանօթ էր հին ասորի խմբագրութիւնն, որ ինչպէս տեսած ենք՝ գոգցես ի սկզբանէ ի մոռացութիւն անկեալ էր, եւ այնպէս ալ մնաց մինչեւ մեր օրերն՝ որպէս թէ կորուսեալ։ Ապա ուրեմն չէին կարող զայն ի ձեռին ունենալ եւ ի կիր արկանել մեր ռամկագիր հեղինակք, որ հազիւ ԺԳ. կամ ի ԺԴ. դարու, աւելի՝ անագանագոյն քան կանխագոյն, կրնան խմբագրած ըլլալ հայերէն Առակներն։ — Այս հանգամանաց նայելով, մեծ ծանրակշռութիւն չի կրնար ունենալ մեզի համար սոյն ասորի խմբգր. սակայն որովհետեւ՝ սանսկրիտ սկզբնագրին եւ պահլաւ թարգմանութեան անհետալուն պատճառաւ՝ իբրեւ հնագոյն բնագիր կը նկատուի եւ արաբերէնին կը նախադասուի, — միշտ աչաց առջեւ ունեցանք, եւ ուրեք ուրեք կարեւոր երեւցածը նշանակեցինք։

Դ. Բայց առաւելագոյն հետազօտութեան նիւթ ըրինք արաբերէն եւ Նոր ասորի խմբագրութիւնքն. վասն զի այս երկուքն ոչ միայն առաւել քան զայլսն դիւրամատոյց եւ առձեռնպատրաստ կրնային ըլլալ մերայոց, այլ նաեւ ի հարկէ սոնց գէթ մին ունենալու էին ի ձեռին, այն Առակներն առնլու համար՝ որ չեն գտնուիր ի հին ասորի խմբագրութեան, այլ կան այս երկուքին մէջ։ Այսպիսեաց մին է Ճանապարհորդին ու Ոսկերչին Առակն, զոր արդէն տեսանք։ Ասա կը յաւելունք երկրորդ մ'ալ, որ չի գտնուիր եւ ոչ իսկ կրնար գտնուիլ հին ասորւոյն մէջ, որովհետեւ առնուած է սկզբնաբար արաբերէն լեզուաւ գրեալ Պերզուէի կենսագրութենէն։

Վէպ գողոց զոր ճարտարութեամբ կը բռնէ տանտէրն։

Երկու գող գնացին ի մեծատան մի երդիք եւ կամէին գողանալ զգանձս նորա, եւ էր լուսնկայ, եւ իմացաւ այրն՝ որ գողքն ի յերդիքն եկին։ Եւ (ցած ձայնով ասէ ընդ կինն որ բարձրաձայն հարցանէ ընդ ինք՝ թէ զայնչափ գանձն ուստի է ժողովել։ Այսոր վերայ[1]) ասէ կինն ընդ այրն՝ թէ (Զ)այս ամէն գանձս եւ (զ)դրամս եւ (զ)կումաշս ուստի՞ անկաւ ի քեզ։ — Եւ ասէ այրն՝ թէ Գողութիւն արարի։ — Եւ ասէ կինն. Ո՞րպէս։ — Եւ նա ասէ. Երթայի ի գողութիւն գիշերն ի մեծատանց երդիքն, եւ էր լուսնկայ զերդ հիմայ, եւ շող լուսնկին ի յերդիքն ի վայր էր ցայթել զինչ հիմայ։ Եւս բռնէի ի շողն եւ իջանէի եւ ասէի զայս բանս՝ Շող շող, Նշուլ Նշուլ[2], եւ զլուսնկին շողն բռնէի եւ ի վայր իջնուի ի տունն, եւ ասէի բաներ, որ զինչ գեղեցիկ կումաշ կայր ի տունն՝ նա ամենայն ինձ երեւենայր, եւ առնէի եւ ի շողն կապէի, եւ ասէի զայս բանս՝ Շող շող, Նշուլ Նշուլ, եւ զշողն զրկէի նա զիս եւ զկումաշն ի վեր տանէր եւ հանէր զիս ի տանիսն։ Եւ այսպէս զամենայն շահեալ եմ։ — Եւ լսեցին գողքն զբանս զայս եւ ուրախացան, եւ աւատացին խաբողական բանիցն, եւ գրկ(եց)ին զշողն՝ որ ի վայր իջնուլին. եւ անկան եւ անխելացան, եւ այրն անկաւ ի վերայ նոցա եւ սպան զնոսա։ Ոսկէփ. 132. Ա․ ՃԺԶ.

[1] Ձեռագրիս մէջ կը պակսի փակագծեալ մասն, զոր անշուշտ անմտադրութեամբ դուրս թողած է ընդօրինակողն։

[2] Պատշաճութեամբ դրած է հայ խմբագիրն՝ իբրեւ մոգական բացատրութիւն՝ այս Շող շող, Նշուլ Նշուլ բառերն, որ մի կողմէն գործողութեան շատ համաձայն է, եւ միւս կողմէն հնչման նմանութիւն ունի սոսր խմբագրութեանց Շուլամ լուլամ, կամ այլ նմանահնչիւն բառերուն հետ։ — Կուիտի իւր տեսած արաբերէն ձեռագրաց այլեւայլ բառերն մի ըստ միոջէ յառաջ բերելով եւ այս կամ այն գիրն այլ նմանաձեւ գրի փոխելով, կը կարծէ որ թերեւս նշանակեն. Ես անփաս կամ ազատ (incolume) եմ, մենք անփաս ենք։ (Studii, էջ 19, Ծան.)

Ե· Մինչեւ ցայս վայր ի մէջ բերեալ դիտողութիւններէն դիւրին է հետեւցընել՝ թէ այն երեք Առակք զոր մեր հետազօտութեանց նիւթ ըրինք, թերեւս եւ այլ ոչ սակաւք, որ անոնց պէս հնդկական կամ օտար ծագումն ունին, հաւանաբար արաբերէնի հետեւողութեամբ յօրինեալ են: Եւ այն եւս հաւանական կ'երեւայ որ ուղղակի կամ անընդմիջաբար արաբերէնէ առեալ են, եւ ոչ եթէ նոր ասորի կամ որպիսի եւ իցէ այլ մեզի ծանօթ խմբագրութեան միջոցաւ: Ահաւասիկ կարծեացս հիմունքն:

1· Յառաջագոյն ի մէջ բերեալ Գ· Առակին մէջ տեսանք թէ որչափ կը տարբերի Հայերէնն՝ — մանաւանդ աղուեսուն զէշն համոզելու համար ըրած խօսակցութեան մասին — երեք օտար (հին ու նոր ասորի եւ արաբ.) խմբագրութիւններէն: Արդ՝ Կուիտի իրեն ծանօթ արաբերէն ձեռագրաց միոյն ընթերցուածն յառաջ կը բերէ, որ ըստ ամենայն մասանց համաձայն է Հայերէն ընթերցուածոյն: Աստ ճշդիւ կը թարգմանենք իտալացի մասնագիտին հատուածն: "Աղուէսն՝ որպէս զի զէշն համոզէ իրեն "հետ երթալու, կը զրուցէ թէ զինք խոտաշատ եւ "առատաջուր տեղ մի պիտի տանի, ուր կայ աղջիկ "մի՝ որ կը բաղձայ զինք տեսնել եւ իրեն հետ ըլլալ: "(Che desidera vederlo ed essere con lui.) Իսկ "զինք երկրորդ անգամ տանելու համար կը զրուցէ "թէ առիւծուն իւր վրայ նետուիլն, զոր էշը կը համարէր թէ զինք մեռցընելու համար ըրած էր, միայն իր մեծ սիրոյն էր (era solo pel grande affetto) "եւն„[1]: (Studii, էջ 61·)

Հայերէնին եւ (Կուիտիի) արաբերէն ընթերցուածոյն, այլ խմբագրութեանց սովորական ընթերցուածէն շեղելով, այսչափ իրարու նմանիլն՝ կարծենք մեծ ցոյց է Հայերէնին ուղղակի արաբերէնէ առնուած ըլլալուն, — երբ հնար չէ այլազգ մեկնել եւ կամ չի գտնուիր ոչ–արաբերէն խմբագրութիւն՝ որ վերյիշեալ արաբերէնին նմանի: Զայս հետազօտելու առիթ կու տայ մեզի ինքնին Կուիտի երկտող դիտողութեամբն զոր կը կցէ ի վերջ իւր հատծին, ուր կը գրէ. "Ինծի կ'երեւայ որ "ինչպէս Էնվէրի Սուհէյլի մէջ՝ (նոյնպէս աստ) պատ"շաճութիւնը (= պարկեշտութիւնը) դրդած է այս "փոփոխութիւնն ընելու„: — Արդ՝ երկու ենթադրութեանց կրնայ առիթ տալ այս խօսքն:

Նախ՝ թէ Հայ խմբագիրն ինքնին յանյնէ մուծած է այս փոփոխութիւնն: — Բայց այս ենթադրութիւն ոչ միայն անհիմն է, այլ նաեւ անհնարին: Եւ արդարեւ ի՞նչպէս կարելի է որ երկու խմբագիրք, առանց հասարակաց աղբիւր մ'ունենալու, ինքնին՝ իրարմէ անջատ, երկու անգամ, զատ զատ խօսքի մէջ, այնպիսի փոփոխութեան մտածանէն՝ որ ոչ բառ իմաստին միայն՝ այլ նաեւ բառ քանակին, իրարու հետ ճշգրիտ նոյնանան:

Երկրորդ՝ թէ նոյն Հայ խմբագիրն աղուեսուն բերանը դրած խօսքերն առած է Էնվէրի Սուհէյլիէն: — Սակայն այս ենթադրութիւն եւս բոլորովին անհիմն է եւ իրականութեան չի համաձայնիր: Առակիս Հայերէնին եւ պարսկերէնին մէջ այլ նմանութիւն չկայ, եթէ ոչ այն միայն՝ որ աղուէսն մտաւ էշու խօսք չ'ըներ, եւ յայտնապէս կը ծանուցանէ իշուն թէ զինք աղջիկ մը պէտք տանի: Յայլում ամենայնի բոլորովին տարբեր են իրարմէ երկու խմբագրութիւնք, եւ պարսկերէնին մէջ աղուեսուն խօսակցութիւնն ոչինչ նմանութիւն ունի Հայերէնին եւ Կուիտիի արաբերէնին խօսակցութեան:

Ահաւասիկ Էնվէրի Սուհէյլին յայսմ մասին գրածին համառօտութիւնն: — Աղուէսն առաջին անգամ կ'ըսէ իշուն. "Եթէ կ'ուզես՝ զքեզ մարգագետին մի տանիմ, որոյ յատակն՝ ակնավաճառի խանթի պէս՝ լուսաւոր շողաւոր գոհարներով զարդարեալ է: Իսկ տեղւոյն օդն՝ անուշահոտ նիւթերով լի սնտկի նման՝ քաղցրահոտութիւն կը բուրէ, եւ ընչածդ՝ քաղցր աղոխի պէս մշկահոտ է„: Այս ստորագրութենէն իշուն բաղձանքը վառեցաւ աղուեսուն հետ երթալու: — Իսկ երկրորդ անգամ — առանց միտ դնելու քանքատանաց իշուն, որ երեսն այնդին դարձուցած՝ "Անիրաւ խաբեբայ, ըսաւ, դու ինծի ազատութիւն խոստացար, եւ առիւծու ճիրաններուն մատնեցիր„ — աղուէսն այնպէս ձեւացուց որ առաջին անգամ տեսածները կախարդական երեւոյթ էր, որոյ իրականութիւնն յերեւան հանելու համար՝ մոգական բառ մի զրուցել պէտք էր, զոր այն ժամանակ չէր կրցած միտքը բերել: Այս եւ այսմ նման խօսքերով այնչափ ըրաւ՝ մինչեւ էշն հաւանեցաւ նորէն հետն երթալու: Երբ տեղն հասան, աղուէսն էշը կեցընելով՝ աճապարեց գնաց բանեցուցած հնարքն իմացուց առիւծուն, որ անշարժ կեցաւ իբրեւ անկենդան: Այնուհետեւ աղուէսը գնաց զէշն առաւ առիւծուն մօտեցուց՝ ըսելով. "Եկուր որ կախարդանաց ի ճշմարտութիւն դառնալը տեսնես„: Ահուդողով մօտ գնաց էշը. բայց գազանին անշարժութիւնը տեսնելով, համարձակութիւն առած՝ սկսաւ ծաղկալից փափուկ խոտերը ճարակիլ: Ինք այս զբաղման մէջ ընկղմած միջոցին՝ առիւծն յանկարծ վրան յարձակեցաւ ու պատռեց: (Անգղ· Թարգմ· Էնվ· Սուհ· էջ 396—398:)

Այս է նոյնութիւն Բ· պրսկ· խմբագրութեան Հայերէն Առակիս հետ, որով միանգամայն կը տեսնուի թէ ոչ միայն զայս՝ այլ եւ որպիսի եւ իցէ Առակ չեն կրնար առած ըլլալ Հայ առակագիրք այսպիսի խմբագրութենէ: Կը մնայ քննել թէ կը գտնուի՞ արդեօք այլ խմբագրութեանց մէջ՝ մերոյն հետ նմանութիւն ունեցող: — Արդարեւ կայ ուրեք նմանութեան երեւոյթ, բայց յայնպիսի հանգամանս՝ որ աւելի ի հաստատութիւն՝ քան ի հերքումն մեր կարծեաց կը ծառայէ:

Անշուշտ միտ դրուած է որ (Կուիտիի) արաբերէնին մէջ աղուեսուն սկզբնական խօսքն երկրորդ մաս մ'ալ ունի, որ է՝ (Կը բաղձայ զինք տեսնել) Եւ իրեն հետ ըլլալ. իսկ Հայերէնին մէջ՝ ըստ միոյ ընթերցուածոյն կ'ըսուի … Եւ զիտակցութիւնն է քեզ պէս, եւ ըստ միւս ընթերցուածոյն՝ … (եւ նա է թագաւոր) Եւ դու ընդ նմա իմաստուն ես: Արդ կայ յունարէն խմբագրութիւն մի, որ յայսմ մասին Հայերէնին նման խօսիլ կու տայ զաղուէսն, ըսել տալով իրեն՝ թէ հիւանդ առիւծն զինքն իւր յաջորդն ընտրել կ'ուզէ: Թէ այս խօսքին նոյնիմաստ բացատրութիւնն ի՞նչպէս մտած է Հայերէնին մէջ՝ զայն դժուար է մակաբերել. բայց շատ դիւրին է իմանալ թէ հայ հեղինակն նոյն խմբագրութենէն առած չէ իւր Առակն: Նախ՝ վասն զի աղուեսուն առիւծն տանիլ ուզած անասունն եղջերու է եւ ոչ էշ[1]: Երկրորդ՝ վասն զի զինքն նորէն տանելու համար

---

[1] Տես զՀայերէնն՝ Հանդէս ամսօր· 1891, էջ 213:

[1] Եղջերու փոխ էշու՝ կայ համառօտ Հայերէն Առակի մի մէջ, զոր Ռսկեփորիկէ մ'առած՝ յառաջ կը բերէ Բողոսեան (1867, էջ 190) եւ է այս. "Առիւծ կու ցանկայր եղջե-

կը զրուցէ թէ առիւծն կարեւոր խօսք մ'ունէր իրեն ըսելու, եւ անոր համար ականջէն բռնեց:

Պարսկերէն եւ յունարէն խմբագրութեանց վրայ գրեալքս բաւական կը համարինք արդարացընելու զկարծիքս՝ թէ սա զմեզ զբաղեցընող Առակն հաւանաբար յարաբերէնէ ուղղակի առնուած է, եւ ոչ այլ խմբագրութեան միջոցաւ: Տեսանք որ պարսկերէնի եւ յունարէնի միջոցաւ առեալ չեն, որ լեզուաց կարող էին տեղեակ ըլլալ հայ խմբագիրք: Ո՛րչափ եւս առաւել անհաւանական է այն լեզուներէն առնուիլն՝ որոց մասին կրնայ համարուիլ թէ ստուգիւ չէին գիտեր: — Այլ տեսակիտէ՝ զնոյն առաւել ապահովութեամբ կարող ենք հաստատել նաեւ Նոր սօրի խմբագրութեան նկատմամբ. որովհետեւ վերագոյն տեսած ենք թէ ի մասին նոյն Առակին՝ այն խմբագրութիւն եւս ըստ ...ական մասանց կը համաձայնի հին սօրի խմբագրութեան եւ արաբերէն սովորական ընթերցուածոյն, որով մանաւանդ ի խօսակցութեան աղուեսուն բոլորովին տարբեր է հայերէնէն:

Խօսքն աւելի ընդհանրայընելով, կարող ենք ըսել թէ թողեալ առ այժմ զայլ հնդկական Առակսն՝ գոնեայ մեր հետազօտութեան առած միւս երկու Առակք եւս՝ նոյնպէս ուղղակի առեալ են յարաբերէնէ եւ ոչ այլ խմբագրութեանց միջոցաւ: Ապահովապէս կարող ենք հաստատել զայս ի մասնաւորի նաեւ Նոր սօրի խմբագրութեան մասին, յորում մեր մանրակրկիտ խուզարկութեանց հակառակ՝ հազիւ միակ տեղ մի գտած ենք, որ չեղելով յարաբերէնէն՝ հեռաւոր նմանութիւն ունենայ հայերէնին հետ: Այս նմանութիւնն, — եթէ արժան իցէ նմանութիւն կոչել, — այն է՝ որ յԱռակի Կողկէն եւ Կրէոյէն, յետնոյն առ առաջինն ըսած խօսքին հայերէնն է. “Արեկ՝ որ տանիմ զքեզ առ ազգն իմ, որ պատուէն զքեզ, եւ քո աղէկին աղէկ առնեմ„. ուր Նոր սօրի խմբագրութիւնն ունի. Հետս եկուր, “որ ցեղս վայելէ ի քեզ, զաւկըներս քու զաւկըներդ ըլլան ու առջեւդ հլութեամբ երեւնան„: — Ոչ ոք այս՝ եթէ ներեալ է ասել՝ մանրադիտական նմանութեան այնչափ ծանրակշռութիւն կու տայ՝ կարծենք, մինչեւ համարիլ թէ այնու փոքու իւիք տկարանայ մեր ապացուցութեան զօրութիւնն:

Զիմրդ եւ իցէ՝ ի հաստատութիւն կարծեացս չեն պակսիր այլ եւս նիւթական զօրաւորագոյն ապացոյցք

2. Մեր հաւաքածոյից մէջ կը գտնուին Առակներ, որոց նիւթն իսկ եւ այլ հանգամանք կը ցուցընեն թէ արաբական ծագումն ունին, եւ կամ եթէ սկզբնաբար հնդկական էին՝ արաբական կաղապարի մէջ ձուլեալ են: Այսպիսեաց մին է՝ Պաղտատու խալիֆային եւ արմաւենի տնկող ծերոյն վէպն[1]: Նոյն վիպին վրայ կը յաւելունք երկրորդ Առակ մ'ալ, որ է

ռուի սիրտ ուտել: Առաքեաց եւ կոչեաց զեղջերուն. բացին զսիրտն. սաստ աղուէսոյն՝ թէ բեր առ իս զսիրտն: Եստես (աղուէսն) եւ ցանկացաւ եւ եկեր: Եւ ասէ առիւծն. Ընդէ՞ր ոչ փութով բերես: Եւ նա ասէ. Թէ ունեցել էր սիրտ՝ ոչ էր եկել, բայց զի վախուէլ էր՝ վասն այն երեկ„:

[1] Տես Հանդէս ամսօրեայ, 1890, էջ 251:

Առակ անառնոց չէղուն հաւկըցող մարդուն:

Այր մի սովորեալ յամենայն աւուր որքան ապրեցաւ՝ հաց մի տանէր եւ ի ծովն ձգէր, որ ոտնըէքն առնուին: Եւ յորժամ հանդերձեալ էր մեռանել՝ պատուիրեաց որդւոյ իւրում եւ ասէ՝ թէ Ես յիմ կենդանութիւնն յամէն օր հաց մի արկանէի ոտնըէցն ի ծովն. ի միտ առ, եւ դու նոյնպէս արա, որ ի քեզ դէմ գայ: Եւ մեռաւ այրն: Իսկ որդին նմանապէս յանձն էառ եւ առնէր զպատուէր հօրն բազում ժամանակս: Եւ յաւուր միում կացեալ յեզր ջրոյն՝ մինչ եկն ոտնըէն առնուլ զհացն, ասէ. Այսչափ ժամանակս իմ հայրն զայսպիսի լաւութիւնս ձեզ արար եւ ես կու առնեմ. դուք ինձ փոխարէն է՞ր չէք առնել: Յայնժամ ասէ ոտնըէկն այն. Եկ առ իս եւ տարայց զքեզ առ հայրն իմ, զի քեզ զփոխարէնն հատուսցէ: Եւ ի գնալն պատուիրէր որդի ոտնըոյն առ նա եւ ասէ. Թէ հայրն իմ բազում ոսկի եւ արծաթ եւ ակունս պատուականս տացէ քեզ, դու մի առնուր, այլ ասա՝ թէ Ի քեզանէ զայն կու խնդրեմ որ զճկոյթդ ի բերանս քարշես: Եւ գնացեալ առ հայր ոտնըոյն՝ զնոյն խնդրեաց: Իսկ նա խոժոռեալ՝ ասէ. Դժուարինս խնդրեցեր, որդեակ: Ապա գիտացիր, թէ մարդոյ տաս՝ պիտի մեռանիս: Եւ ասէ այրն՝ թէ Յամենայն զօրութենէ պահեմ, եւ չասեմ մարդոյ: Իսկ նորա արկեալ զճկոյթն ի բերանն նորա՝ արձակեաց զնա ի տուն իւր: Եւ ելեալ այրն ի ծովէն՝ զուարճանայր(?) թէ Զինչ գործեցի, որ յայն ամենայն ոսկոյն եւ յարծաթոյն եւ ի պատուական ականցն չառի, թողի եւ դատարկ եկի: Եւ այնպէս տրտմեալ գնաց նստաւ ի քարատակ մի, եւ ոչ կամէր գնալ ի տուն իւր:

Յայնժամ եկին երկու ճնճղուկ նստան ի վերայ քարին, եւ ասեն ընդ միմեանս՝ թէ ի՞նչ խեղճ է այս մարդս, որ եօթն կարաս ոսկի կայ յայս քարատակս թաղած, եւ նա չգիտէ որ հանէ եւ տանի իւր ապրանք առնէ: Իսկ նորա լուեալ՝ հասկացաւ զլեզուս նոցա, եւ եկեալ ի գիշերի գաղտ եհան զոսկին, եւ սկսաւ փարթամանալ եւ տունս մեծամեծս շինել, եւ ջորիս եւ ձիս եւ լուծս եզանց եւ գեհս ոչխարաց եւ այլ որ ինչ վայել է աշխարհի:

Եւ յաւուր միում ասէ եզ մի յեզանցն՝ թէ ի՞նչ առնեմ, զի անխնայ կու լծեն զիս եւ չեն ողորմիլ: Ասէ էշն որ մերձ էր առ եզն՝ թէ Վաղն սուտ հիւանդ անկիր. եւ յորժամ տեսանեն՝ խղճան եւ չտանին լծեն: Եւ զայս լուեալ այրն՝ ծիծաղեցաւ, եւ ասէ ցմշակն. Վաղն զայս անուն էշ ի տեղի հիւանդ եզինն տար լծէ: Իսկ նա այնպէս արարեալ՝ մինչեւ յերեկուն լծեաց զէշն: Եւ յորժամ եկն ի տունն՝ ասէ էշն ցհիւանդ եզն՝ թէ Ողորմելի եզնակ, խորհեցան ի յարտն՝ թէ Այն եզն որ հիւանդացաւ՝ վաղիւն մորթենք, որ չնիհարանայ: Լուր, վաղիւն առողջացիր եւ գնա լուծ քաշէ, որ չզենեն: Եւ զայս լուեալ առն՝ դարձեալ ծիծաղեցաւ:

Յայնժամ ասէ ցնա կինն. Ո՛վ այր դու, մեք աղքատ մարդիկք էաք, եւ յանկարծակի հարըստացար. եւ ժամ ժամ կու կենաս դու ընդ քեզ կու ծիծաղիս: Ինձ է՞ր չես ասել թէ ուստի՞ է այս ամէնս, եւ յի՞նչ կու ծիծաղիս: Ասէ այրն. Ո՛վ կին դու, թէ ասեմ՝ կու մեռանիմ. այնոր համար չեմ ի ասել: Իսկ կնոջն յանդգնեալ ասէ. Ճար չկայ, պիտի որ ասես: Եւ նա ոչ կամէր: Եւ բազում բռնադատեալ կնոջն, անճարեալ ասէ. Ո՛վ կին դու, հաւատա ինձ որ առանց ամէն տարակուսանաց կու մեռնիմ թէ կու ասեմ: Ապա ի լո՛ւռ կաց մինչ(եւ) գիշերպաշտօն եւ մատաղ առնեմ եւ հաղորդիմ, եւ ապա ասեմ եւ մեռնիմ: Եւ մինչդեռ յայսմ խորհրդեանն էին, շնլակոտիկ մի լի տրտմութեամբ նստէր ի գետնամէջն, եւ իսկոյն գայր աքաղաղն խնդալով ի դուռն ի ներս, եւ քան երեսուն մարի հաւ

